ԿԻՐԱԿԻ
ՓԵՏՐՈՒԱՐ
6
DIMANCHE
6 FEVRIER
1977

# ՅԱՌԱՋ
ՄԻՏՔ ԵՒ ԱՐՈՒԵՍՏ

ՕՐԱԹԵՐԹ
ՀԻՄՆԱԴԻՐ ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ

# HARATCH
LE SEUL QUOTIDIEN ARMENIEN EN EUROPE OCCIDENTALE
Directrice : ARPIK MISSAKIAN
83, RUE D'HAUTEVILLE, 75010 PARIS

— Tél. : 770-86-60 — Fondé en 1925
C. C. P. Paris 15069-82 571027317 A R. C. PARIS

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ
Ֆրանսա Տար. 170 Ֆ. Վեցամսեայ 90 Ֆ.
Արտասահման Տար. 200 Ֆ. Հատը 1 Ֆ. 20

LE NUMERO 1,20 F

52րդ ՏԱՐԻ — ԹԻՒ 13.785
Fondateur : SCHAVARCH MISSAKIAN
52e ANNÉE — N° 13.785

## « ICI LES CHOSES NOUS CORRESPONDENT »

(*Le Passager clandestin*)

Armen Lubin est venu d'Istanbul en France avant sa vingtième année et il y est resté jusqu'à sa mort en 1974. Entre les galetas et les hôpitaux de Paris, les sanas de l'Assistance et le *Home* de réfugiés où il est mort, il semble qu'il n'y ait pas de place pour le sourire et la joie, et pourtant son œuvre poétique, si elle répond aux circonstances de sa vie, si elle y trouve sa matière, n'est pas plaintive ni amère. On se souvient de *Transfert nocturne* : le « grand malade », l'infirme, est transporté sur une civière d'un bâtiment à un autre, par une nuit étoilée ; couché sur le dos, il voit vaciller les constellations au rythme du pas des porteurs. Il éprouve fugitivement la présence universelle, l'immense réalité mouvante avec lui : ce n'est pas une consolation ou une diversion qui distrairait le gisant de sa condition de malade. Seulement il y a *autre chose*, il y a un *ailleurs* (la nuit, le ciel, le mouvement), il y a *ici* et *ailleurs* ensemble, réunis par le lien à la fois souverain et très frêle d'une conscience, d'une parole. L'homme brisé qui parle dans les poèmes de Lubin ne rassemble pas seulement les éléments de son existence, mais des choses lointaines, étrangères à lui et comme absentes jusqu'au moment où elles s'intègrent au poème, et alors, par exemple :

*La boite à outils deveint visible au*
*sommet de l'Ararat.*

Bien sûr, toute image en poésie vient d'*ailleurs*, par surprise ; il n'y a pas de poésie qui ne nous dépayse et ne nous ramène au centre en même temps, mais, s'agissant d'Armen Lubin, cela est vrai encore d'une autre manière qui lui est toute particulière et unique dans la poésie contemporaine. En effet, cette parole, ces images, dont d'autres peuvent jouer par pure exubérance, gratuitement, lui sont nécessaires : elles sont pour lui le seul moyen d'être *ici*, exilé d'une terre qui a été son enfance, d'une société à laquelle la maladie ne lui permet pas de s'adapter. L'*ailleurs* pour lui n'est pas l'imaginaire, n'est pas l'inconscient ni le rêve : c'est tout ce qu'il a vécu, tout ce qu'il vit, c'est lui-même éternellement déplacé :

*Ainsi proposé, moi j'admets le corbeau.*
*Ainsi proposé, moi j'admets le glaive nu.*

Le français lui permettait sans doute de se voir, lui-même et sa vie, avec une sorte de détachement ironique, comme invité à une fête toujours un peu insolite, *passager clandestin* de notre monde. De son œuvre en langue arménienne, qui est considérable (un roman : *Retraite sans musique* et de nombreuses nouvelles), il ne parlait pas volontiers. Je crois qu'elle était son lien avec ses compatriotes dispersés en tous pays, une affaire de famille presque, à laquelle il ne pensait pas que *nous* puissions réellement nous intéresser. Combien tragique cependant, et révélatrice des misères de notre temps. Mais justement : cet *ailleurs* là était pour lui comme un secret, une sorte d'héritage inaliénable. La nouvelle ici traduite est un épisode de la légende vraie du peuple arménien.

HENRI THOMAS

*« N. R. F. » Février 1977*
*Texte précédant la traduction*
*« D'un Brin de cœur tendre »*
(Պճեղ մը անոյշ սիրտ)

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

### «ՊՃԵՂ ՄԸ ԱՆՈՅՇ ՍԻՐՏ»Ը ֆրանսերէն

Շահան Շահնուրի «*Պճեղ մը անոյշ սիրտ*»ին ֆրանսերէն թարգմանութիւնը լոյս տեսաւ *N.R.F.*ի փետրուարի թիւին մէջ, կցուած Անրի Թոմայի մէկ գրութեան:
La Nouvelle Revue Française (*Gallimard*) publie dans son numéro de Février 1977 « *Un brin de Cœur Tendre* », la traduction française du chef-d'œuvre de Chahan Chahnour :

**ՊՃԵՂ ՄԸ ԱՆՈՅՇ ՍԻՐՏ**

précédé du texte de Henri Thomas que l'on lira ci-dessus.



# Ս. ԹԱԴԷՈՍԻ ՎԱՆՔԸ

1962ի ամառը վերադարձայ Թեհրան եւ Յուլիսի վերջերը, ուխտագնացութեան օրերուն, ուղեւորուեցայ Ս. Թադէոսի Վանքը:

Կէս գիշերին Թաւրիզէն՝ ինքնաշարժով ճամբայ ելանք դէպի Թրքական սահմանագլուխը, հին Հայաստանի Արտազ գաւառը:

Առաւօտեան դէմ, հեռուէն՝ դաշտին ծայրը, լեռնահովիտի մը մէջ, տեսնուեցաւ Ս. Թադէոսի վանքի գմբէթը: Քանի մօտեցանք՝ ա՛յդքան աւելի անհամբեր էի տեսնելու հայ հնաւուրց անցեալի այդ մէկ կարեւոր յիշատակարանը: Քանի մը հարիւր մեթր մնացած, կանգ առի եւ դիտեցի այդ հոյակապ շինութեան ներդաշնակ տեսարանը:

Խառն զգացումով... ակնածանքով, հիացումով եւ սիրով... մօտեցայ այդ հնամեայ կոթողին ու այդտեղ տեսայ Հայ Հանճարը: Յարգանքով շոյեցի այդ սրբատաշ քարերը, ու հայեացքս բարձրացնելով՝ զմայլանքով դիտեցի արտաքին պատերուն գեղակերտ խաչքարերը և ժանեականման զարդաքանդակները որոնք կարծես երէկ քարտաշին դէփրէն ելած ըլլային: Քարի վրայ փորուած բանաստեղծութիւն մըն էր:

Վանքին շրջանը ըրի եւ իջայ դէպի առուակը ծարաւս յագեցնելու: Ու ետքը, բարձրանալով՝ քալեցի դէպի դաշտը... Աւարայրի դաշտը: Անդին հեռուն՝ տեղ մը կը հոսէր Տղմուտը: Աւարա՛յր, սրտի ու մտքի Թոխնք... դիւցազներգութեան: Հոն խտացած է Հայ Ժողովուրդի գաղափարական եւ հերոսական այլեւս յաւերժական իմաստը:

Մտասուզուած՝ կը դիտէի այդ պատմական դարաւոր վայրը եւ ինքնաբերաբար, շարժապատկերի նման, մտքէս անցան անուններ... Վարդանանք, Եղիշէ, Ալիշան... ու վերյիշեցի Նահապետի քերթուածին քանի մը տողերը, (Բլբուլն Աւարայրի).

«Թադէի վանուց ձէնիկդ ինձ դիպաւ,
Սըրտիկս՝ որ ի խաչն էր կիպ՝ թունդ
առաւ.
Ի խաչին թեւէն թըռայ ու հասայ
Գտայ զքեզ ի դաշտ քաջին Վարդանայ»

Ու դանդաղ քայլերով վերադարձայ դէպի վանք: Քանի՛ դարեր եկեր ու անցեր են... Քանի՛ Հայեր բռներ են Նժդեհութեան ճամբան: Ու հիմա ես, հեռաւոր Ամերիկայէն, եկած եմ տեսնելու իմ նախնիքներուս երկիրը: Բոլոր հայ պանդուխտներու սրտէն խօսած է Ալիշան...

«Ո՛վ դու ի վաղուց մոռցուած
հայրենիք,
Ո՛վ դու իմ սըրտիս անմոռաց տեղիք.»

Դարեր անցեր են... աշխարհակալներ եկեր ու գացեր են: Եւ հիմա՝ վանքին շուրջը հազարաւոր հայ ուխտաւորներ հաւաքուեր են... քանի մը տարեցներ մատաղ կը պատրաստեն, եւ Ուրմիոյ շրջանի երիտասարդները շուրջպար կը բռնեն... ցերեկը՝ տաւուլ-զուռնա, գիշերը՝ քամանչա եւ տուտուկ: Տաղաւար է:

Կ՚ենթադրուի թէ իններորդ դարուն կառուցուած է վանքին հնագոյն մասը, եւ յաւելումներ եղած են յաջորդ շրջաններուն: Դարեր եկեր ու անցեր են... քաններորդ դարու սկիզբը՝ Թադէի վանքը երթեւեկի կարեւոր կայան եղած է յեղափոխական գործունէութեան... դարեր պիտի անցնին:

Յաջորդ օրը՝ լուսաբացին, բարձրացայ մօտակայ բլուրը: Արշալոյսին առաջին գորշ ճառագայթները հալեցուցած էին մութը: Օդը պայծառ էր, եւ քիչ ետք՝ տեսնուեցաւ Մասիսը հեռուէն, մանրանկարի մը նման:

Օրը անցաւ: Խոտին վրայ երկնցած՝ կը դիտէի Ս. Թադէի քարակերտ գեղեցկութիւնը: Արեւը հորիզոնին դպաւ եւ իր ոսկի հեղուկը թափեց սարերու գագաթներուն վրայ:

Գիտէի թէ հեռուն՝ Մասիսը կանգնած է անսասան: Եւ երեւակայեցի թէ երկինքէն՝ ձեռք մը իջեցուցած էր Ս. Մեսրոպի կանթեղը Մասիսի կատարին որպէսզի հայկականութեան լոյսը սփռէ արտաշխարհի հայ նոր սերունդին վրայ:

ԵՆՈՎՔ ԼԱՋԻՆԵԱՆ

HARMONIE DU SOIR

*Voici venir les temps où vibrant sur sa tige*
*Chaque fleur s'évapore ainsi qu'un encensoir ;*
*Les sons et les parfums tournent dans l'air du soir ;*
*Valse mélancolique et langoureux vertige !*

*Chaque fleur s'évapore ainsi qu'un encensoir ;*
*Le violon frémit comme un cœur qu'on afflige ;*
*Valse mélancolique et langoureux vertige !*
*Le ciel est triste et beau comme un grand reposoir.*

*Le violon frémit comme un cœur qu'on afflige,*
*Un cœur tendre, qui hait le néant vaste et noir !*
*Le ciel est triste et beau comme un grand reposoir ;*
*Le soleil s'est noyé dans son sang qui se fige.*

*Un cœur tendre, qui hait le néant vaste et noir,*
*Du passé lumineux recueille tout vestige !*
*Le soleil s'est noyé dans son sang qui se fige...*
*Ton souvenir en moi luit comme un ostensoir !*

CH. BAUDELAIRE

ԻՐԻԿՆԱՅԻՆ ՆԵՐԴԱՇՆԱԿՈՒԹԻՒՆ

*Ահաւասիկ ժամանակն ուր թրթռալով ցօղունին*
*Բուրվառի մը հանգունակ կը մխայ մէն մի ծաղիկ*
*Երեկոյեան օդին մէջ կը պտուտքին ձայն ու բոյր,*
*Վալս տրտմօրօր եւ նուաղուն ցնորք:*

*Բուրվառի մը հանգունակ կը մխայ մէն մի ծաղիկ.*
*Մինչ ջութակը կը թրթռայ նման սրտի մը ցաւատանջ.*
*Վալս տրտմօրօր եւ նուաղուն ցնորք,*
*Երկինքն է մութ ու գեղեցիկ շքեղաշուք որպէս խորան:*

*Մինչ ջութակը կը թրթռայ նման սրտի մը ցաւատանջ,*
*Փափկագին սիրտ մը որ կ՚ատէ ոչնչութիւնն հսկայ ու սեւ.*
*Երկինքն է մութ ու գեղեցիկ շքեղաշուք որպէս խորան*
*Խեղդուեցաւ արեւն ահա արեանը մէջ որ կը սառի:*

*Փափկագին սիրտ մը որ կ՚ատէ ոչնչութիւնն հսկայ ու սեւ*
*Լուսաւորեալ իր անցեալէն կը հաւաքէ հետքերն ամէն.*
*Խեղդուեցաւ արեւն ահա արեանը մէջ որ կը սառի,*
*Յիշատակդ կը փողփողի իբրեւ ճաճանչ՝ հոգիիս մէջ:*

Թարգ.՝ Զ. Գ.

ծութեան, հին գորգերու, փրանսական արծաթագործութեան կամ յունական հին դրամներու անսպիտ նմոյշները պարունակող արկղիկներու առջեւ:

×

Իսկ բնական գեղեցկութիւնը սրմով օժտուած է Թանգարանին վայրն ու շրջապատը վերջնականօրէն կը հաշտեցնէ քեզ այդ գաղափարին հետ, բաժնուելէ առաջ այդ գլուխ գործոցներէն, ուր՝ Կիրլանտաոյէն մինչեւ Գլօտ Մոնէ, Ֆրանց Հալցէն մինչեւ Կէյնծպորոհ անցնելով Ռէմպրանտէն, Գորոյէն թէ Մանէէն՝ բոլորը ներկայ են: Պահելով գրեթէ ամենուրեք գերակշիռ յատկանիշները գլուխ գործոցին, հասարակ յայտարարը Կիւլպէնկեան հաւաքածոյին, քանի նման պաստառներու առջեւ է որ միայն կը զգաս հանճարեղ արուեստագէտին կնիքը կրող ներշնչման անկեղծութիւնը, հաւատքը, պարզութիւնը, նիւթին ու անոր վերացականութեան միջեւ գտնուող բազմաթիւ աստիճաններուն արուեստագէտին ինքնութեան հետ նոյնացումը, գոյներու ընդմուտ համանուագը եւ վերջապէս, գուցէ կարեւորագոյնը՝ այն աննկարագրելի մղումը կեանքի որ կը ծնի հոգւոյդ մէջ, ի տես գլուխ գործոցին: Անբացատրելի բայց իրաւ:

×

Երբ Հայ է գինով անցորդը, կրնայ հանդարտ սրտով ու լրիւ գոհունակութեամբ չբաժնուիլ այս սրահներէն. բայց հո՛ս, ստիպողական է նախ մարդ էակին մասին խորհիլ եւ հասկնալ ջանալ զայն իր բարդոյթներով: Ու կ'երազես:

×

Մեկնում: Կը սպասենք: Օդանաւ մը իջաւ հանգչիլ՝ հարիւրէ աւելի ուղեւորներ բերելով Լիզպոն:

Կէս ժամ ետք, Քաթրայի տղա՛քը Փարիզ պիտի փոխադրէ: Մինակ ենք: Մխամինակ: Ոչ իսկ մէկ օտար ճամբորդ: Գլխաւոր նաւուղիղին հաճելի թուեցաւ մեր ողխականը: Ըսաւ՝ նուագեցէ՛ք. երգեցէ՛ք. մօտս եկէ՛ք. իմ կողմէս դիտեցէք անջրպետը: Երազկոտ՝ մնացի լուռ: Ոմանք գացին դիտելու պաղ անջրպետը:

Լեւոնը բացաւ կափարիչը իր կախարդ տուփին. մաքրեց ճպոտը: Ու սկսաւ Պախի Տաքոնը տարածուիլ պարապ թռչունին պողպատեայ փորին մէջ: Օդաչուները եւ մենք խմբուեցանք երեք առաջին նստարաններուն միջեւ: Եւ առաջնորդը շարունակեց՝ շամբա՛նեը... հրամցուցէ՛ք մեր հիւրերուն: Տօն է այսօր: Յիշեցի օրը՝ Դեկտեմբեր 24:

Ու ես դարձեալ խորհեցայ՝ Գալուստ Սարգիսի կրնա՞ր վստահիլ քանի մը միլիառ տոլար հայ ազգային գործիչներուն:

Եւ այդպէս: Հասած ե՞նք արդէն՝ այո՛, Փարիզ:

ԳՐԻԳՈՐ ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ

# ARMEN LUBIN

A JACQUES BRENNER

*Saint-Raphaël, le 9 nov. 1967*

Cher ami,

Je ne me crois pas de force pour traiter un sujet aussi vaste que le mouvement surréaliste, et le traiter à la suite et à travers André Breton, qui a été sa force motrice. Le substantiel numéro d'hommage que la *N. R. F.* leur a consacré ne pouvait que me dissuader, s'il en était encore nécessaire, d'ajouter quoi que ce soit à ce volume exemplaire. On sait de quoi la *N.R.F.* est capable dans ses grands jours lorsque son appareil critique se hausse à mesure.

Peut-on parler de hausse à propos d'une équipe d'écrivains que l'on sait grands ! Mais il en va des écrivains comme pour les arbres bien venus : ils arrivent à gagner en hauteur, sans se hausser pour autant, rien qu'en se mettant à chanter comme sous l'effet d'une inspiration, et rien qu'en s'attirant des oiseaux ivres de printemps.

Le surréalisme, c'était cela même : le printemps du monde ! C'était cette folie du renouveau avec ses harmoniques profondes et ses transparences subites, mais aussi l'impatience trépidante des grêlons en rafales. La vraie poésie, qui n'a jamais été innocente, se faisait entendre, sous la poussée du surréalisme, par des grondements souterrains aussi suspects et inquiétants que les avalanches printanières. Nous autres, on était contents de savoir que, au cœur de la grande rupture, André Breton se tenait ferme, comme un pylône de dimensions insolites, et qu'il prenait à sa charge les lignes de haute tension, peu nombreuses pour commencer, de plus en plus emmêlées et hypothétiques avec le temps, mais toujours couronnées de gerbes d'étincelles qui grésillent.

On était content et perplexe. On se demandait comment, à la suite de quelle métamorphose, le pylône, qui était d'une matière minérale, à moins qu'il n'ait été taillé dans le bois même dont on fait les théories excessives - mais de toute manière inusable, inébranlable, avec des arêtes tranchantes, — on se demandait comment il allait pouvoir fleurir.

Eh bien, il n'allait pas fleurir dans le sens où on l'entend. Ou plus exactement, il n'allait fleurir que par en dedans, et pour soi seul. On connaît le meuble fendu qui laisse à découvert le cœur du bois, finement travaillé par le ver rongeur. La fleur décevante du bois, c'est précisément cette réduction parfaite du labyrinthe, ce même labyrinthe que le poète aura à évoquer jusqu'à la fin de ses jours, le *Minotaure* à la traîne, et toujours à la recherche du fil d'Ariane. Le poème ne sera qu'une descente dans les parties obscures de son être, descente qu'il jugera bon d'accomplir par le moyen de l'écriture automatique ou autrement. Ceci, pour la théorie. Dans la pratique, les poésies de Breton se laisseront traverser par un souffle ample, de haute envolée, et qu'il sera bien malaisé de distraire de sa prose savante. Ce sont les images qui font balle chez Breton, et il en est d'admirables. Le malheur est que le courant du poème ne porte pas l'image, et que celle-ci semble rapportée de l'extérieur et comme plaquée. Mais on ne peut oublier *La Rosée à tête de chat* et ses pareilles.

J'ai repris quelques volumes défraîchis. On peut les feuilleter. Lire, c'est plus difficile. Le jeune chef qui marchait à la tête d'une pléiade de peintres et de poètes, entraîné par eux et les entraînant vers toutes sortes d'expériences, nous semble dépassé aujourd'hui par ses compagnons, dont certains occupaient une place obscure à l'époque. Cet état de choses n'enlève rien aux conquêtes qu'il a pu accomplir dans d'autres disciplines du savoir, avec une sorte de génie. Nous avons affaire à un écrivain aux curiosités singulières, dont on ne peut ni prouver ni réfuter la pensée qui appartient à la tradition ésotérique. Il a eu l'audace de placer son espoir dans les pouvoirs de l'irrationnel, ceux de l'inconscient et du rêve, pouvoirs dont la récupération doit lui permettre, en principe, d'accéder à ce *point suprême* où disparaissent toutes les antinomies. L'idée millénaire de la déification de l'homme par la Haute Science, cette idée-là avait trouvé chez lui un développement, qu'il voulait cohérent et vigoureux, mais qui ressemble davantage à une aspiration, voire à un rêve vertigineux.

Ses expériences avaient-elles quitté le domaine exclusivement verbal ? Avaient-elles reçu quelque application téméraire ? Des poètes surréalistes, dont la pensée était moins tendue et l'ambition plus modeste, ne contribuèrent pas faiblement à l'édification de sa gloire.

J'espère que vous n'attendez pas de moi des souvenirs. Je n'en ai point. On peut être un familier du carrefour Vavin et rester à l'écart des contacts. Mais le surréalisme était dans l'air en ces années vingt-cinq, et *les mots faisaient l'amour* entre la place Blanche et Montparnasse. On voyait passer Breton sur la toile de fond de la Rotonde, avec son beau profil d'empereur romain et la tranquille assurance du stratège qui vient de bousculer un monde pourri. On venait d'enterrer un vieil homme aux favoris déployés, un peu comme les nageoires du bébé-requin. Les poètes du cordon d'Arthur Mayer étaient tenus par Foch et Barrès, ses bêtes noires. Impérative, sa voix résonnait : «*Il est inadmissible...*» A l'entendre trancher ainsi du problème du rêve et de l'action, on comprenait qu'il n'y avait rien à comprendre au surréalisme. On était disposé à le sentir ou on ne l'était pas. Le surréalisme était une attitude, une tournure d'esprit, et un tournant décisif qui avait été amorcé depuis déjà plusieurs années, mais qui, grâce à Breton, recevait sa charte et se voulait aventure collective. Le mouvement, qui allait si fortement marquer son époque, n'était qu'un cri de révolte au départ (*la révolte seule est créatrice de lumière*) mais qui très vite avait changé de perspective, pour étudier le fonctionnement réel de la pensée, en se servant de l'écriture automatique comme mode d'investigation. Après quoi il s'est aventuré dans l'action militante, c'est-à-dire politique, ce qui allait précipiter la désagrégation du groupe. Mais entre-temps, il avait lancé des poètes. Et quels !

Hegel et le cadavre exquis, Freud et les petits papiers, Héraclite, Kant, le *Zohar* et les golems, rien ne semblait rebuter la jeunesse ardente d'alors, qui s'appliquait à *transformer le monde* avec ses poèmes et proses, qu'il ne fallait pas appeler littératures. Pas de ça ! Mais il y avait Eluard. Il y avait surtout la *N.R.F.* qui servait de contrepoids aux haricots sauteurs du Mexique. «*Lisez... Ne lisez pas...*» Didactique et doctrinal, Breton était tout indiqué pour entreprendre une révision des noms consacrés, et pour en imposer de nouveau— avec son sens intuitif de la poésie. Il avait changé l'échelle des valeurs. On peut dire que la critique poétique de toute une époque s'est incarnée en lui, non sans injustice pour Supervielle, il est vrai, mais quelques faux pas ne pouvaient entamer son immense prestige. S'il reste une réserve à formuler, elle concerne l'esprit quasi sceintifique dont se servait Breton. Il mettait en formules ce qui, en poésie, se refuse à toute formation, ce qui est indicible, ce qui élude la prise. Maintes fois traduit, Breton a été introduit en de nombreuses littératures. En littérature baroque, jamais.

Lorsqu'on en veut à l'existence pour des raisons absurdes, mettons... philosophiques, on va s'amuser chez les surréalistes, en se disant que c'est toujours ça de pris. Mais oui ! avec eux on prenait la porte des champs. Dieu ! comme leurs revues étaient jolies ; je veux dire excitantes, étranges, autres ! Tous les dessinateurs et peintres avaient du génie, à preuve qu'ils transformaient le décor de la vie quotidienne, et qu'ils mettaient le couple à toutes les sauces, l'homme et la femme, en les torturant et les dépeçant à qui mieux mieux. On eût dit qu'une prémonition leur avait montré les futurs carnages, dix ans à l'avance. L'équivoque reste inséparable de toute pensée qui est d'essence poétique. Des quelques idées-forces auxquelles Breton s'était attaché, la liberté et l'amour tenaient la place la première, en se confondant. Amour de l'infini, pour tout dire, qui doit nécessairement passer par l'intercesseur idéal qu'est la femme. Les photos qui ornent *Nadja* sont particulièrement intéressantes. Pour ce qui est du texte proprement dit, il est bien difficile de dire comment, et par quel miracle, le rêve jaillit de source chez Nerval.

Une voix s'est tue qui nous était chère. «Tout est à recommencer...» dit Jean Paulhan. On peut faire remarquer, peut-être, qu'il existe une incompatibilité essentielle entre la poésie qui est verbe, c'est-à-dire chair sensible, et le rayon décharné et froid que projette l'homme prométhéen. Bon, bon, je n'ai rien dit.

Il est des moments où je rêve après Breton. Le Breton qui fait face, chaque fois qu'on met des entraves à la liberté d'expression, le Breton en colère qui s'arme de sa phrase tendue à se rompre. Je me le représente disant son fait à ce pape sinistre qui se fait véhiculer jusqu'à Fatima, en grand équipage, pour ameuter des foules moyenâgeuses. Il paraît que la Fédération anarchiste de France avait fait déposer des roses rouges sur la tombe du poète. André Breton les avait bien méritées.

ARMEN LUBIN

*N.R.F.* — «118 *Lettres Inédites*», Octobre 1976.

*A UNE PASSANTE*

*La rue assourdissante autour de moi hurlait.*
*Longue, mince, en grand deuil, douleur majestueuse,*
*Une femme passa, d'une main fastueuse*
*Soulevant, balançant le feston et l'ourlet ;*

*Agile et noble, avec sa jambe de statue.*
*Moi, je buvais, crispé comme un extravagant,*
*Dans son œil, ciel livide où germe l'ouragan,*
*La douceur qui fascine et le plaisir qui tue.*

*Un éclair... puis la nuit ! — Fugitive beauté*
*Dont le regard m'a fait soudainement renaître,*
*Ne te verrai-je plus que dans l'éternité ?*

*Ailleurs, bien loin d'ici ! trop tard ! jamais peut-être !*
*Car j'ignore où tu fuis, tu ne sais où je vais,*
*O toi que j'eusse aimée, ô toi qui le savais !*

CH. BAUDELAIRE

ԱՆՑՈՐԴ ԿՆՈՋ ՄԸ

Վայնասունները չորս դին խլացուցիչ փողոցին.
Բարակիրան ու երկար, սգազգած, ցա՛ւ վեհագոյն,
Կին մը անցաւ, վեհաշուք ձեռքով մը վեր առնելով,
Վէտվէտելով ծալ առ ծալ երասանքներ ու քղանցք:

Հեզաճկուն, վեհաշուք. իր արձանի սրունքով.
Ես որ կում կում կ'ըմպէի, օ տարօրէ՛ն սրտաթունդ,
Իր աչքին մէջ՝ մրրիկով ծոցուոր երկինք գունաթափ
Անուշութիւնը ազդու եւ հեշտանքը մահացու:

Բոցկլտում մը... եւ գիշեր: Գեղեցկութիւն խարուսիկ
Որուն նայուածքը յանկարծ կրկին կեանքին բերաւ զիս,
Յաւերժութեա՛ն մէջ միայն պիտի տեսնեմ քեզ դարձեալ:

Այլուր. ասկէ շատ հեռու. շատ ուշ. այլ գուցէ երբեք.
Չեմ գիտեր ո՛ւր խոյս կու տաս. չես գիտեր ո՛ւր կ'երթամ ես
Դուն՝ զոր սիրած կ'ուզէի ըլլալ. դուն՝ որ գիտէիր...

Թարգ՝ Զ. Գ.

Imprimé sur les Presses
DU JOURNAL «HARATCH»
83, rue d'Hauteville 75010 Paris
Commission Paritaire : N° 55935

## ՈՒՐԱԽ ՄԵՌԵԱԼԸ

Խղունճներով լեցուն հողի մը մէջ խխուն
Պիտի փորեմ ես իսկ գերեզման մը խորունկ,
Ուր կարենամ փռել ծեր ոսկորներս ըստ կամս,
Մոռացման մէջ ննջել զերդ շանաձուկ՝ ծովուն։

Կտակները կ'ատեմ, կ'ատեմ եւ շիրիմները
Ու հայցելու փոխան աշխարհէն շիթ մ'արցունք,
Ապրո՛ղ՝ կը նախընտրեմ ագռաւները կանչել
Արիւնելու զազիր մարմնիս ծայրերն ամէն։

Որդե՛ր, մութ ընկերներ ականջազուրկ, անաչք,
Ձեզի՛ կուգայ, տեսէ՛ք, մեռեալ մ'ազատ, ուրախ.
Իմաստուններ դուք հեշտ, օ՛ նեխութեան որդիք,

Փլուզումիս ընդմէջ արդ քալեցէք անհոգ.
Ինծի ըսէք թէ կա՞յ դեռ չարչարանք մ'արդեօք
Ընդ մեռելոց մեռեալ այս անկենդան մարմնին։

*Թարգ. «Յառաջ»*

## LE MORT JOYEUX

Dans une terre grasse et pleine d'escargots
Je veux creuser moi-même une fosse profonde,
Où je puisse à loisir étaler mes vieux os
Et dormir dans l'oubli comme un requin dans l'onde.

Je hais les testaments et je hais les tombeaux ;
Plutôt que d'implorer une larme du monde,
Vivant, j'aimerais mieux inviter les corbeaux
A saigner tous les bouts de ma carcasse immonde.

O vers ! noirs compagnons sans oreille et sans yeux,
Voyez venir à vous un mort libre et joyeux ;
Philosophes viveurs, fils de la pourriture,

A travers ma ruine allez donc sans remords,
Et dites-moi s'il est encor quelque torture
Pour ce vieux corps sans âme et mort parmi les morts !

CH. BAUDELAIRE



Ամերիկեան նկարչութեան նուիրուած երկու ցուցադրութիւնները Փարիզի որոնք վերջ գտան Սեպտեմբերին, լայն ընդունելութեան մը արժանացան Փարիզի հասարակութեան կողմէ։ Այդ ցուցադրութիւններէն մէկը Պօպուր կեդրոնի *Նիւ Եորք – Փարիզ* անունին տակ, ցոյց կուտար 1905էն 1965 ամերիկեան եւ եւրոպական նկարչութիւններու փոխյարաբերութիւնները։ Երկրորդը 50ական թուականներու նորագոյն նկարչութեան ականաւոր դէմքերէն մէկուն՝ Մաթրուէլի նուիրուած էր։ Այս ցուցադրութիւններու առիթով տուինք «Յառաջ»ի մէջ ամերիկեան արդի նկարչութեան ծնունդին անդրադարձող գրութիւն մը («Ճնշումէն անդին», Սեպտ. 13–15)։ Կը վերարտադրենք այսօր Մաթրուէլի պաստառներէն մէկը, *Էլէժի*ներու շարքէն («Սպանական Հանրապետութեան համար էլէժի», 1962, իւղաներկ պաստառի վրայ, 122×183 սմ.)

Imprimé sur les Presses du Journal «HARATCH» 83, rue d'Hauteville, 75010 Paris
Commission Paritaire : N° 55935

## ԼՈՒՍՆԻՆ ԲԱՐԻՔՆԵՐԸ

*Լուսինը, որ քմահաճոյքն է ինքնին, պատուհանէն նայեցաւ մինչ կը քնանայիր օրօրոցիդ մէջ, եւ ըսաւ. «Այս մանուկը սիրեցի»։*

*Եւ յուլօրէն իջաւ ամպերէն իր սանդուխէն ու ապակիներէն անցաւ անաղմուկ։ Թեւերուն մէջ առաւ քեզ մօր մը փափուկ գորովով եւ իր գոյները, Թափեց դէմքիդ։ Ահա թէ ինչո՛ւ բիբերդ մնացին կանաչ եւ այտերդ՝ արտակարգ տժգոյն։ Այդ այցելուհիին է տես է որ աչքերդ այդքան տարօրէն մեծցան, եւ այնքա՛ն գորովալից սեղմեց կոկորդդ՝ որ լալու փափաքդ պահեցիր ընդմիշտ։*

*Եւ սակայն, ուրախութեանդ զեղումին մէջ, Լուսինը կը լեցնէր ամբողջ սենեակը ֆոսֆորային մթնոլորտով մը՝ իբրեւ թոյն լուսաւոր, եւ կենդանի ամբողջ այդ լոյսը կը մտածէր ու կ'ըսէր. «Յաւիտենապէս պիտի կրես համբոյրիս ազդեցութիւնը։ Պիտի ըլլաս գեղեցիկ՝ ինչպէս կ'ուզեմ։ Պիտի սիրես՝ ինչ կը սիրեմ եւ ինչ որ կը սիրէ զիս, — ջուրը, ամպերը, լռութիւնն ու գիշերը, ծովը՝ կանաչ ու անսահման ջուրը՝ անձեւ ու բազմաձեւ, վայրն՝ ուր պիտի չըլլաս երբեք, սիրելին՝ զոր պիտո՛ չճանչնաս, ծաղիկները անհեթեթ, բոյրերը՝ որ զառանցանք կուտան, կատուները՝ որ կը նուաղին դաշնամուրներու վրայ եւ որոնք կիներու պէս կը հեծեն՝ ձայնով մը խուլ ու հեշտալուր։*

*«Եւ պիտի սիրուիս սիրելիներէս, պիտի տփուիս տարփածուներէս։ Պիտի ըլլաս դշխոյ թագուհին կանաչ աչքերով մարդոց՝ որոնց կոկորդը եւս սեղմեցի գիշերային իմ գգուանքներուս մէջ, անոնց՝ որոնք ծովը կը սիրեն, անսահման ծովը՝ խռովայոյզ ու կանաչ, ջուրը՝ անձեւ ու բազմաձեւ, վայրը՝ ուր չեն, կինը՝ որ չեն ճանչնար, ծաղիկները անհեթեթ՝ որոնք անծանօթ կրօնքի մը բուրվառներուն կը նմանին, բոյրերը՝ որ կամքը կը յուզեն, եւ վայրի ու հեշտասէր կենդանիները՝ խորհրդանշան իրենց խենթութեան»։*

*Եւ ահա թէ ինչո՛ւ, անիծեալ անոյշ շփացած պզտիկ, հիմա ոտքերուդ եմ տարածուած՝ անձիդ մէջ ամբողջ փընտռելով ցոլքը՝ ահաւոր Աստուածութեան, ճակատագրական կնքամօր, թունաւոր դայեակին բոլոր* լուսնահարներուն։

(Թարգմ. «Յառաջ»)

## LES BIENFAITS DE LA LUNE

La lune, qui est le caprice même, regarda par la fenêtre pendant que tu dormais dans ton berceau, et se dit : « Cette enfant me plaît ».

Et elle descendit moelleusement son escalier de nuages, et passa sans bruit à travers les vitres. Puis elle s'étendit sur toi avec la tendresse souple d'une mère, et elle déposa ses couleurs sur ta face. Tes prunelles en sont restées vertes, et tes joues extraordinairement pâles. C'est en contemplant cette visiteuse que tes yeux se sont si bizarrement agrandis ; et elle t'a si tendrement serrée à la gorge que tu en as gardé pour toujours l'envie de pleurer.

Cependant, dans l'expansion de sa joie, la Lune remplissait toute la chambre, comme une atmosphère phosphorique, comme un poison lumineux ; et toute cette lumière vivante pensait et disait : « Tu subiras éternellement l'influence de mon baiser. Tu sera belle à ma manière. Tu aimeras ce que j'aime et ce qui m'aime : l'eau, les nuages, le silence et la nuit ; la mer immense et verte ; l'eau informe et multiforme ; le lieu où tu ne seras pas ; l'amant que tu ne connaîtras pas ; les fleurs monstrueuses ; les parfums qui font délirer ; les chats qui se pâment sur les pianos et qui gémissent comme les femmes, d'une voix rauque et douce !

« Et tu sera aimée de mes amants, courtisée par mes courtisans. Tu seras la reine des hommes aux yeux verts dont j'ai serré aussi la gorge dans mes caresses nocturnes ; de ceux-là qui aiment la mer, la mer immense, tumultueuse et verte, l'eau informe et multiforme, le lieu où ils ne sont pas, la femme qu'ils ne connaissent pas, les fleurs sinistres qui ressemblent aux encensoirs d'une religion inconnue, les parfums qui troublent la volonté, et les animaux sauvages et voluptueux qui sont les emblèmes de leur folie ».

Et c'est pour cela, maudite chère enfant gâtée, que je suis maintenant couché à tes pieds, cherchant dans toute ta personne le reflet de la redoutable Divinité, de la fatidique marraine, de la nourrice empoisonneuse de tous les *lunatiques*.

CH. BAUDELAIRE

## ԱՅՆ ՄԻ ՀԱՏԻԿ ԲԱՌԸ

Ու տիեզերքը լուռ միշտ կրկնում է նոյն աղօթքը.
Ու ամէն օր ամէն անգամ մի խորհուրդ է դնում այդ աղօթքի մէջ,
Ու միշտ այդ աղօթքը յայտնագործութիւն է թւում,
Երջանկացնող, երեշտակի ժպիտը շուրթին,
Արբեցնող՝ կրաշք – հրաշք սիրոյ նման:

Ու ամէն անգամ որոնումը անպայման խարխափ կը ձգի ճշմարտի ափին,
Պատրանքը ցունեղ կը խամրի ճարպում ճշդութեան խոնաւ ճկուղում,
Մինչ նուաստ ժպիտը շուրթին որոնողը, թէկուզ թաքուն, կ'որոնի:
Լուսաբացին յաջորդում է մայրամուտը:
Ամէն լուսաբաց իր Բարի լոյսն ունի,
Ամէն մայրամուտ՝ իր Գիշեր բարին:

Իրար նման չեն նպատակները, որոնումները,
Ու գտածները, ու գտնողները.
Նրանցից ոմանք հեգնանքը աչքերում պահած՝
Շռյում են իրենց ունեցածը
Նախանձի կամ ինքնագոհութեան
Ժպիտը շուրթին վազում են առաջ՝ լոկ նահանջելով:

Եղածը քիչ է, կամ թէ ոչինչ է...
Մինչ ամէն ինչ է...
Քանզի, եթէ դու դառն ես համարում
Այն, որի համը միայն դու գիտես,
Ու գոհ ժպտում ես,
Շատ քաղցր է թւում քո դիմացինին:

Լռի՛ր, համբացի՛ր ողջախոհութիւն:
Երբ աչքերդ շատ լայնանան
Տիեզերքի աղօթքը քեզ չի օգնի.
Դու կը դադարես որոնելուց, քայլելուց, ընկնելուց...
Չես զգայ արցունքի ու արեան համը,
Պարտութեան դառնութիւնը, յաղթանակի բերկրանքը,
Չես վայելի սպասումի ու հանդիպման վայելքը,
Չես մոնչայ խելագար ու վիրաւոր վագրի նման,
Երբ քեզ մնայ եղած – չքացած ճշմարտութիւնը
Որը նոյն դատարկութիւնն է՝ դիմացինի աչքով:
Մինչդեռ... արիւնդ եռում է ուժեղ,
Քանզի դու դառն ես համարում, փուչ բան
Հենց այն՝ ինչը խիստ անմատչելի է,
Որքա՜ն արգիլուած, ցանկալի՜ նոյնքան:

Սակայն ամէնքը այս աշխարհում ապրել են ուզում,
Ու փոխում են նանապարհները
Նոր արահետներ գտնելու համար:
Ժամանակը թափահարում է թաշկինակը
Որը նման է ծակ քակի.
Ու միշտ դատարկ այդ ճակը բրքջացել է
Արծաթէ դրամներ որոնողների վրայ:

Յոյսը գլխահակ իր ծխախոտն է վառում նորից:
Դու ամէն ինչ անում ես այս աշխարհից
Ինչ որ բան խլելու համար,
Մինչ ամէն ինչ ոչնչութիւնից գնում է դէպի ոչնչութիւն:
Թափանցիկ սուտ է. իմաստ փնտռելն է որ իմաստ չունի...
Ու նպատակը, կամ թէ արժէքը այդ նպատակի
Ինքնախաբէութեան մերկ վիհն է որ կայ:

Տիեզերքը միայն մի աղօթք ունի,
Մինչ ամէն օք իւրովի է ըմբռնում այդ աղօթքը,
Մէկին թւում է, թէ անգիր գիտի՝ դեռ չլսած,
Յաջորդը թարգմանում է՝ չհասկացած,
Մինչ խորհուրդ ունի այդ աղօթքը,
Որը չընկալողները շտապում են
Դողալով սակայն, որ չվրիպեն,
Ու թքում են՝ բաց աչքերով բայց ոչինչ չտեսնող կոյրի նման,
Անցնելով այն հարստութեան կողքից
Որը երբեք բնդունակ չեն նկատելու.
Լռութիւնս հեծկլտում է նրանց հետքերին նայելիս:

Որքա՜ն անզօր են ու որքա՜ն զօրեղ
Հառաչանքներ ծնող ապրումները:
Մարդիկ Մա՛րդ են փնտռում:
Աշխարհը նման է մեռածի երբեք չփակուող աչքի,
Անկեանք, անարիւն, սառը ճշդութեան
Ու դաժան – դաժան յանդուգն փաստի՝
Թէ խելօք շունը աւելի պէտք է
Մի չգործած յանցանք յայտնաբերելու համար՝
Քան ազնիւ լռութիւնը:
Քանզի յանցանքը յանցանք չի կոչուի՝
Թէ յայտնաբերուի...
Ո՞վ կարող է պարզաբանել ու թափահարել
Ճշդութիւնը օդում, երբ առանց այն էլ
Շնչելու օդը այսքան պակաս է...

×

Ծաղիկները սիրուն այնպէս քաղցր են բուրում
Մեռնելուց առաջ, մինչդեռ անզգայ են:
Ես ուզում եմ համբուրել աշխարհի շուրթերը՝
Քաղցրութիւնը զգալու համար,
Ու եթէ յանձնուրուեմ՝ կը ծիծաղեմ...
Ու անպայման աշխարհի ականջին կը շշնջամ
Այն մի հատիկ բառը:

*Երեւան*

## ԱՇՈՒՆ

Մենակութիւնը մուրացկանի պէս
Հայցում է աշնան քնքշութիւնը,
Ու երազները ստուերների պէս
Լոյսեր են փնտռում:
Աշնան ծառի պէս, չեղած սիրոյ պէս,
Լափում են իրար բոլոր տենչերը,
Ու ցնորքները սիրահարի պէս
Ոտնահետքեր են ձգում ու ձգում:
Երջանկութիւնը աստծուն հացնում,
Հառաչն՝ առ երկինք.
Խնկարկուող արեւ փակերի դիմաց.
Արգելքներ, ստեր, չգործած մեղքեր
Ու դէպքեր... դէմքեր...
Ու քայլող երազ ու շնչառութեան փոխադդեցութիւն,
Ու մի բան, որ միշտ կախւում է օդում,
Ու դառնում է չի՛ք.
Մի պարզ խնկարկում հաւատալիքի:

Թող աշնան նման տխրութիւնները սիրուն մահանան,
Ու երազները, ստուերների պէս
Թող լցնեն միայն բաց գիշերները,
Ու յայտնութիւնը, այնքան ցանկալի,
Սպասման նման հուսկ վարձատրուի:
Ու աշնան նման ամէն ցանկալի վերակրկնուի,
Թէկուզ, որ ամէն անցած քնքշութիւն
Իր պատկերն ունի, աչքերը, լեզուն:
Գիշերը իր մերկ մարմինն է թաքցնում իմ երազներում:
Լուսաբացներին աստղերը կարծես ծերանում են:

*Մարսէյլ*

# ՇՈՒՇԱՆԻԿ ՄԱՆՈՅԵԱՆ

## ՔԵ՛Զ

Ես ուզում եմ լուծուել մթնշաղներին.
Հորիզոնից այն կողմ երազներին ի զուր են.
Ես ուզում եմ ձուլուել աշնան գոյներին,
Հմայքները այնտեղ անմարմին են:

Արեւի հետքերը տխուր են.
Նրա մեղքն է երկինքը լքուած:
Հրաշքները զգոյշ մակարդւում են
Եւ աստուածային պատուաստն է ստեղծուած:

Սիրտդ բաց է, երկի՛նք,
Ու արիւնդ հոսող կաթ է շուրթերիս:
Ծուխդ լաց է, երկի՛ր,
Ու շիւղերից դողը իմ չտուած բերքն է:

Քե՛զ, առանց երդումի մի օր եթէ լքեմ,
Մեղքս՝ սիրուց վարձն է.
Լռութիւններից հուրը անհուն,
Մեռնող լոյսերդ դու չվճարես:

Քանզի երկինքները...
Սանդղամատեր չեն որ ծայրը ելնես՝
Այլ... տենչանքներ են,
Օծուած երազներ:

Արեւներից այն կողմ լռութիւնները
Քայլող սէրեր են.
Հրաշքները՝ գտուած սպասում...
Հողը մայրացած գիշերի գրկում:

*Մարսէյլ*

Imprimé sur les Presses du Journal «Haratch» 83, rue d'Hauteville, 75010 Paris
Commission Paritaire : N° 55935